Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 12 ՀՈՒՆԻՍ 1950

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։


# ԳՅՈՒՂԱԿԱՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Վերջերս հրապարակված ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «1950 թվականի բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումները անցկացնելու մասին» որոշումը հանդիսանում է բարձր բերք ստանալու համար մղվող պայքարի բոլշևիկյան ծրագիր։ Այդ որոշումը, որը ոգորված է կոլխոզային կարգի նկատմամբ ստալինյան հոգատարությամբ, մեծ խանդավառությամբ ու աշխատանքային նոր եռանդով դիմավորեց կոլխոզային գյուղի աշխատավորությունը։

Սովետական Միության աշխատավորների հետ միասին մեր ռեսպուբլիկայի կոլխոզնիկները, գյուղատնտեսության մասնագետները, մեքենա-տրակտորային կայանների, սովխոզների աշխատողները քննարկելով պարտիայի և կառավարության որոշումը, նորանոր պարտավորություններ են վերցնում 1950 թվականի բերքահավաքը և գյու-

ղատնտեսական մթերքների մթերումները կազմակերպված ու օրինակելի անցկացնելու ուղղությամբ։

Մեր պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է գլխավորել գյուղական աշխատավորների աշխատանքային այդ խանդավառությունը, քաղաքական-մասսայական աշխատանքի ծավալման միջոցով մոբիլիզացնել նրանց ուժերը բերքահավաքը սեղմ ժամկետներում, անկորուստ անցկացնելու և գյուղատնտեսական մթերքների մթերման պետական պլանները ժամանակին կատարելու համար։

Պարտիական կազմակերպությունները չպետք է բավարարվեն պարտիայի և կառավարության որոշումը միայն ժողովներում քննարկելով կամ առանձին, թռուցիկ ընթերցանություններ կազմակերպելով։ Նրանք պարտավոր են ագիտատորների միջոցով սիստեմատիկ աշխատանք կատարել Համ. Կ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումն իր ամբողջ էությամբ կոլխոզնիկների սեփականությունը դարձնելու համար։ Ագիտատորները պետք է հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր կոլխոզնիկ, յուրաքանչյուր ՄՏ կայանի, սովխոզի



աշխատող կարողանա հասկանալ բերքահավաքի և մթերումների քաղաքական խոշոր նշանակությունը, ցույց տան այդ կամպանիայի կարևորագույն նշանակությունը մեր երկրի հզորության հետագա ամրապնդման և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում։ Անհրաժեշտ է բերքահավաքի նախապատրաստման և անցկացման ընթացքում լայնորեն օգտագործել բոլշևիկյան ագիտացիայի բազմաթիվ ձևերն ու մեթոդները, կազմակերպել հետաքրքիր ու բովանդակալից զրույցներ, օգտագործել պատի թերթերը, խլիչովկաները, ռադիոն, ցուցադրական նյութերը, կազմակերպել կոլխոզային դաշտերի առաջավոր մարդկանց հանդիպումներ, ապահովել դաշտում կոլխոզնիկների կուլտուրական սպասարկումը և այլն։ Մեծ է զրույցի նշանակությունը քաղաքական ագիտացիայի սիստեմում. ագիտատորը հմտորեն անցկացնելով բերքահավաքին նվիրված յուրաքանչյուր զրույց, անմիջականորեն այն կապելով տվյալ կոլխոզի, բրիգադայի, օղակի ամենօրյա աշխատանքի հետ, ակտիվ կերպով զրույցին մասնակից պետք է դարձնի իր ունկնդիրներին։

*Մեծ ուժ ունի ագիտատորի անձնական օրինակը։ Նա իր անձնական օրինակով, աշխատանքով պետք է կազմակերպի կոլխոզնիկների աշխատանքը բրիգադայում, մեքենա-տրակտորային կայանի աշխատողների մեջ։*

*Բերքահավաքի նախապատրաստման ու անցկացման օրերին ագիտատորները պետք է կոլխոզային դաշտերում նոր ուժով ծավալեն սոցիալիստական մրցումը, օգնեն պարտիական կազմակերպություններին՝ պարբերաբար ստուգելու սոցիալիստական մրցումով կոլխոզնիկների ստանձնած պարտավորությունների կատարումը և ամեն կերպ մասսայականացնելու մրցման արդյունքները։ Անհրաժեշտ է բոլոր աշխատավորներին իրազեկ պահել, թե ովքեր և ինչպես են աշխատել տվյալ օրը, ովքե՞ր են մրցության առաջավորները, խրախուսել նրանց և օգնել հետ մնացողներին հասնելու առաջավորներին։*

*Ագիտատորները պետք է լայնորեն մասսայականացնեն մրցության առաջավորների, կոլխոզային դաշտերի հերոսների աշխատանքի հարուստ փորձը, այդ փորձը դարձնելով բոլոր կոլխոզնիկների սեփականու-*



*թյունը։ Ռեսպուբլիկայի հազարավոր կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիներն աճեցնելով առատ բերք, ուսումնասիրում են առաջավորների աշխատանքի փորձը և նրանց օրինակով պայքարում են այս տարվա բերքն անկորուստ ու սեղմ ժամկետում հավաքելու և պետական պարտավորությունները ժամանակից շուտ կատարելու համար։*

*Ագիտատորները պետք է բացատրեն և բոլոր կոլխոզնիկների սեփականությունը դարձնեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ 1950—1951 թվականներին բարձր բերք ստանալու համար կոլխոզնիկներին, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին, ցույց տան, թե ինչպես իրենց անձնուրաց աշխատանքով ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մի մեծ խումբ աշխատողներ վերջերս արժանացել են կառավարական ամենաբարձր պարգևների։*

*Արդեն ամենուրեք սկսվել է խոտհունձը։ Առաջին օրերի արդյունքները ցույց են տալիս, որ այն կատարվում է դանդաղ։ Բոլոր միջոցները չեն ձեռնարկվում որպեսզի մին-*

չև հացահատիկային կուլտուրաների բերքա-
հավաքի սկսելն ավարտվի խոտհունձը, սի-
լոսացումը և անասնակերի կուտակումը։

Անհրաժեշտ է, որ հացահատիկային կուլ-
տուրաների բերքահավաքի նախապատրաստ-
ման ողջ աշխատանքը սերտորեն զու-
գակցվի տեխնիկական կուլտուրաների ցան-
քի լավագույն մշակության հարցի հետ, ճըշ-
տորեն կազմակերպվի աշխատանքը կոլխո-
զում, ՄՏ կայանում, օրավուր ամրապնդվի
աշխատանքային կարգապահությունը բրի-
գադաներում, օղակներում։

ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի և
ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «1950 թ. բեր-
քահավաքը և գյուղատնտեսական մթերքնե-
րի մթերումներն անցկացնելու մասին» որո-
շումը լուրջ ժողովրդա-տնտեսական խնդիր է
դնում մեր կոլխոզների առաջ։ Պարտիական
կազմակերպությունների, ագիտատորների
մարտական խնդիրն է՝ մոբիլիզացնել բոլոր
ուժերը՝ բերքահավաքն ու մթերումները կազ-
մակերպված ու սեղմ ժամկետում անցկացնե-
լու համար։

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԱՌԱՋԻՆ ՍԵՍԻԱՆ

Հունիսի 12-ից մինչև հունիսի 19-ը, Կրեմ-
լում, տեղի ունեցավ 1950 թվականի մարտի
12-ին համաժողովրդական քվեարկությամբ
ընտրված ՍՍՌՄ երրորդ գումարման Գերա-
գույն Սովետի առաջին սեսիան։

Առաջին նիստում Միության Սովետի Նա-
խագահ ընտրվեց դեպուտատ Մ. Ա. Յասն-
նովը, Նախագահի տեղակալներ՝ դեպուտատ-
ներ Ա. Ի. Կիրիչենկոն, Տ. Մ. Զուևան, Ա.
Յու. Սնեչկուսը, Ա. Ի. Նիյազովը։ Ազգու-
թյունների Սովետի Նախագահ ընտրվեց դե-
պուտատ Վ. Շայախմետովը, Նախագահի
տեղակալներ՝ դեպուտատներ Մ. Յակուբո-
վը, Մ. Վ. Զիմյանինը, Վ. Տ. Լացիսը, Թ. Մ.
Մատիաշվիլին։ Գերագույն Սովետի երկու
պալատներն ընտրում են իրենց Մշտական՝
Օրենսդրական Նախագծումների, Արտաքին
Գործերի և Բյուջետային Հանձնաժողովները։

Միության Սովետի և Ազգությունների Սո-
վետի համատեղ նիստում լսվեց ՍՍՌՄ Ֆի-

նանսների մինիստր ընկ. Ա. Գ. Զվերևի զե-
կուցումը՝ ՍՍՌՄ 1950 թ. Պետական բյու-
ջեի և 1948 ու 1949 թվականների Պետա-
կան բյուջեի կատարման վերաբերյալ։

Ապա Միության և Ազգությունների Սո-
վետները առանձին-առանձին քննարկում են
Պետական բյուջեի առթիվ տրված զեկու-
ցումը և միաձայն հաստատում են ՍՍՌՄ
1948 ու 1949 թվականների Պետական բյու-
ջեի կատարման վերաբերյալ հաշվետվու-
թյունը և ընդունում «Օրենք ՍՍՌՄ 1950 թվա-
կանի Պետական բյուջեի մասին»։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիան հաս-
տատում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախա-
գահության Հրամանագրերը։

Հունիսի 19-ին, Միության Սովետի և Ազ-
գությունների Սովետի համատեղ նիստում
ընտրվում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նա-
խագահությունը հետևյալ կազմով.

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահու-
թյան Նախագահ՝

**Ն. Մ. Շվերնիկ**— դեպուտատ ՌՍՖՍՌ
Սվերդլովսկի օկրուգից։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահու-
թյան Նախագահի Տեղակալներ.

**Մ. Պ. Տարասով**— դեպուտատ ՌՍՖՍՌ Ու-
ֆայի օկրուգից։



**Մ. Ս. Գրեչուխա**— դեպուտատ Ուկրաի-
նական ՍՍՌ Բերեժանսկի օկրուգից։

**Վ. Ի. Կոզլով**— դեպուտատ Բելոռուսա-
կան ՍՍՌ Սլուցկի օկրուգից։

**Շ. Ռաշիդով**— դեպուտատ Ուզբեկական
ՍՍՌ Ջիզակի օկրուգից։

**Դ. Քերիմբաև**— դեպուտատ Ղազախական
ՍՍՌ Պավլոդարի օկրուգից։

**Վ. Բ. Գոգուա**— դեպուտատ Վրացական
ՍՍՌ Բաթումիի օկրուգից։

**Ն. Հ. Հեյդարով**— դեպուտատ Ադրբեջա-
նական ՍՍՌ Սաբիրաբադի օկրուգից։

**Յու. Ի. Պալեցկիս**— դեպուտատ Լիտվա-
կան ՍՍՌ Տելշյայսկի օկրուգից։

**Ֆ. Գ. Բրովկո**— դեպուտատ Մոլդավական
ՍՍՌ Բելցիի Քաղաքային օկրուգից։

**Ա. Մ. Կիրխենշտեյն**— դեպուտատ Լատ-
վիական ՍՍՌ Ցեսիսսկի օկրուգից։

**Տ. Կուլատով**— դեպուտատ Կիրգիզական
ՍՍՌ Ուզգենի օկրուգից։

**Ն. Դոդխուդոև**— դեպուտատ Տաջիկական
ՍՍՌ Մուրգաբի օկրուգից։

**Մ. Պ. Պապյան**— դեպուտատ Հայկական
ՍՍՌ Ստեփանավանի օկրուգից։

**Ա. Սարիև**— դեպուտատ Թուրքմենական
ՍՍՌ Կագանովիչյան օկրուգից։

Ա. Մ. Յակոբսոն— դեպուտատ Էստոնական ՍՍՌ Լյանեսկի օկրուգից։

Օ. Վ. Կուուսինեն— դեպուտատ Կարելո-Ֆիննական ՍՍՌ Կուրկիյոկսկի օկրուգից։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Քարտուղար՝ Ա. Ֆ. Գորկին— դեպուտատ Չուվաշական ԱՍՍՌ Կանաշի օկրուգից։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության անդամներ՝

Վ. Մ. Անդրիանով (դեպուտատ Լենինգրադ քաղաքի Նևսկի օկրուգից), Միր-Ջաֆար Աբասովիչ Բաղիրով (դեպուտատ Ադրբեջանական ՍՍՌ Բաքվի Ստալինյան օկրուգից), Ս. Մ. Բուդյոննի (դեպուտատ Ուկրաինական ՍՍՌ Շեպետովկայի օկրուգից), Ս. Ա. Վագապով (դեպուտատ Բաշկիրական ԱՍՍՌ Դուվանի օկրուգից), Ա. Դ. Դանիյալով (դեպուտատ Դաղստանի ԱՍՍՌ Բույնակսկի օկրուգից), Յա. Է. Կալնբերզին (դեպուտատ Լատվիական ՍՍՌ Ռիգայի Քաղաքային օկրուգից), Վ. Վ. Կուզնեցով (դեպուտատ ՌՍՖՍՌ Ստալինգրադի օկրուգից), Զ. Ա. Լեբեդևա (դեպուտատ Մոսկվա քաղաքի Սոկոլնիչիի օկրուգից), Լ. Գ. Մելնիկով (դեպուտատ Ուկրաինական ՍՍՌ Կիևի Լենին-



յան օկրուգից), Զ. Ի. Մուրատով (դեպուտատ Թաթարական ԱՍՍՌ Կազանի գյուղական օկրուգից), Պ. Կ. Պոնոմարենկո (դեպուտատ Բելոռուսական ՍՍՌ Մինսկի Գյուղական օկրուգից), Մ. Ա. Սուսլով (դեպուտատ Սարատովի մարզի Սարատովի Լենինյան օկրուգից), Զ. Տ. Ֆեոդորովա (դեպուտատ Կիրովի մարզի Մալմիժի օկրուգից), Ն. Ս. Խրուշչև (դեպուտատ Մոսկվա քաղաքի Կալինինյան օկրուգից), Մ. Ֆ. Շկիրյատով (դեպուտատ ՌՍՖՍՌ Տուլա-Ռյազանի օկրուգից)։

Այնուհետև ՍՍՌՄ Գերագույն Սովետն անցնում է ՍՍՌՄ Կառավարություն՝ ՍՍՌՄ Մինիստրների Սովետ կազմելու հարցին։

Դեպուտատ Ն. Ս. Խրուշչևի առաջարկով ՍՍՌՄ Գերագույն Սովետը միաձայն ընդունում է հետևյալ որոշումը.

«Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետը որոշում է.

1. Հավանություն տալ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի գործունեությանը։

2. Հանձնարարել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Մինիստրների Սովետին հետագայում ևս շարու-

նակել Պետությունը կառավարելու պարտականությունների կատարումը»։

Միության Սովետի և Ազգությունների Սովետի ընդունած որոշումների համաձայն, ՍՍՌՄ Գերագույն Սովետն անցնում է խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի կոչի քննարկմանը։ Այս հարցի առթիվ հաղորդումով հանդես եկավ դեպուտատ Վ. Վ. Կուզնեցովը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը միաձայն ընդունում է հայտարարություն խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի կոչի կապակցությամբ։

---

## ԲՈԼՈՐ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՐՁՆԵԼ ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՍԵՍԻԱՅԻ ՆՅՈՒԹԵՐԸ

1950 թվի հունիսի 12-ից—19-ը, Մոսկվայում տեղի ունեցավ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության երրորդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիան։

Ամբողջ սովետական ժողովուրդը հսկայական խանդավառությամբ, աշխատանքային սխրագործություններով դիմավորեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիան։ Ժողովրդի ընտրյալները բազմակողմանի քննության առան մեր մեծ Հայրենիքի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման կարևորագույն հարցերը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը ընդունեց «Օրենք ՍՍՌՄ 1950 թվականի Պետական բյուջեի մասին», ընտրեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահություն, հավանություն տվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի գործունեությանը, միաձայն հայտարարություն ընդունեց ատոմային զենքն արգելելու մասին

խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի դիմումի կապակցությամբ և հաստատեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին սեսիայի նյութերը աշխատավորության մեջ լայնորեն մասսայականացնելու և պարզաբանելու գործում մեծ են ագիտկոլեկտիվների և բոլոր ագիտատորների անելիքները։

Ընկեր Ստալինը բազմիցս ընդգծել է, որ պարտիայի քաղաքականությունը բանվորներին ու գյուղացիներին պարզաբանելը մասսաներին ճիշտ ղեկավարելու կարևորագույն պայմանն է։

«... Պետք է բացատրել պարտիայի ու Սովետական իշխանության ցուցումները, բացատրել համբերատարությամբ և ուշադիր կերպով, որպեսզի մարդիկ հասկանան՝ ինչ է ուզում պարտիան և ուր է տանում նա երկիրը։ Այսօր չհասկացան—նեղություն կրեք վաղը բացատրելու։ Վաղը չհասկացան—նեղություն կրեք մյուս օրը բացատրելու։ Առանց դրա չի լինի և չի կարող լինել այժմ ոչ մի ղեկավարություն»։

Ագիտատորներն իրենց բոլշևիկյան ճշմարիտ խոսքով բանվորների, կոլխոզնիկների,



ինտելիգենցիայի, ամբողջ աշխատավորության լայն խավերի մեջ պետք է մասսայականացնեն մեր մեծ Հայրենիքի ժողովրդական տնտեսության, սովետական պետության արտաքին և ներքին քաղաքականության կարևորագույն խնդիրները։

Ագիտատորները զրույցների ժամանակ պետք է ցույց տան սովետական դեմոկրատիայի հզոր և կենսարար ուժը, որի պերճախոս վկայությունն է ԱՍՈՒՄ Գերագույն Սովետի դեպուտատների կազմը։ Միության Սովետի և Ազգությունների Սովետի դեպուտատներից 418-ը բանվորներն են, 269-ը գյուղացիներ. դեպուտատների կազմում են սովետական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչները։

Սովետական ժողովուրդը Գերագույն Սովետ է ուղարկել կոմունիզմի գործին անհունորեն նվիրված պարտիական և ոչ պարտիական բոլշևիկների, որոնց դաստիարակել է Լենինի—Ստալինի մեծ պարտիան։ ՍՍՌՄ Գերագույն Սովետում, ինչպես նաև իշխանության մեր բոլոր տեղական օրգաններում, ներկայացված են մեր անծայրածիր Սովետական Հայրենիքում բնակվող բոլոր ազգությունների մարդիկ, կոմունիզմ կառուցողների երիտասարդ, միջին և ավագ սերնդի ներ-

կայացուցիչները։ Բավական է նշել, որ միայն Ազգությունների Սովետի դեպուտատների թվում կան՝ 137 ռուս, 38 ուկրաինացի, 25 բելոռուս, 29 ուզբեկ, 19 ղազախ, 44 վրացի, 32 ադրբեջանցի, 21 լիտվացի, 22 մոլդավացի, 20 լատիշ, 19 կիրգիզ, 20 տաջիկ, 32 հայ, 20 թուրքմեն, 22 էստոնացի, 13 կարելո-ֆինն, 4 աբխազ, 4 բաշկիր, 9 բուրյաթ, 9 կոմի, 9 թաթար և այլ ազգությունների ներկայացուցիչներ։

Սովետական իշխանությունը մարդկային պատմության մեջ առաջին անգամ տղամարդկանց հետ համահավասար իրավունքներ է տվել կանանց, նրանց համար ապահովել բոլոր պայմանները ստեղծագործական աշխատանքի համար, պետական, հասարակական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում իրենց տաղանդներն ու ընդունակությունները դրսևորելու համար։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների թվում կան 280 կին։

Ծանոթացնելով աշխատավորներին սեսիայի նյութերի հետ, ագիտատորները զրույցների ընթացքում ամենուրեք պետք է ցույց տան Սովետական կառավարության և բոլշևիկյան պարտիայի իմաստուն քաղաքականությունը, ցույց տան, որ ամբողջ ա-



զատասեր ժողովուրդների հայացքներն ուղղված են դեպի Սովետական կառավարությունը, որ այդ ժողովուրդներն իրենց ազատությունը տեսնում են սովետական ժողովուրդների տնտեսական և քաղաքական փայլուն հաղթանակների մեջ։

Միաժամանակ, ագիտատորների խնդիրն է իրենց ամենօրյա զրույցներում ցույց տալ սովետական դեմոկրատիայի գերազանցությունը, ցույց տալ, որ կապիտալի երկրներում միլիոնավոր աշխատավորներ իրավազուրկ են, որ բուրժուական պառլամենտները ի սպաս են դրված իմպերիալիստական ռեակցիային։ Ամերիկայի ժողովրդի լավագույն զավակները բանտ են նետվել ԱՄՆ-ի կոնգրեսին «չհարգելու» համար։ Նրանք պետք է աշխատավորությանը ցույց տան, որ կապիտալիստական պետությունների էկոնոմիկան ապրում է մեծ ցնցումների մեջ վերահաս նոր տնտեսական ճգնաժամի կապակցությամբ։ ԱՄՆ-ում և կապիտալիստական այլ երկրներում կրճատվում է արդյունաբերությունը։ Հսկայական չափով աճում է գործազրկությունը, խիստ կերպով վատթարա-

նում է աշխատավորների նյութական դրությունը։ Միացյալ Նահանգներում 1950—51 բյուջետային տարում հարկերի գումարը 8 անգամ ավելի է քան 1938—1939 տարում, իսկ Անգլիայում այդ նույն ժամանակամիջոցում հարկերն աճել են ավելի քան 4 անգամ։ Ռազմական ծախսերի աճը կապիտալիստական երկրների բյուջեներում առաջ է բերում խոշոր դեֆիցիտներ, որոնք ծածկվում են պետական հարկերի ավելացման և դրամի թողարկման հաշվին, որը պատճառ է դառնում ապրանքների գների աճմանը։ ԱՄՆ-ի պետական բյուջեն ռազմական բյուջե է, կրում է ագրեսիվ, հակաժողովրդական բնույթ։ Անգլիայի ռազմական ծախսերը 1950 թվականին կկազմեն 1.200 միլիոն ֆունտ ստերլինգ՝ 1949 թվականի 760 միլիոն ստերլինգի դիմաց։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին սեսիան քննեց և հաստատեց 1950 թվականի պետական բյուջեն, որը վառ կերպով արտացոլում է մեր երկրի ձեռք բերած հաղթանակները կոմունիզմի կառուցման գործում։

Սոցիալիստական պետության 1950 թվականի պետական բյուջեն լիովին համապատասխանում է մեր երկրի ժողովրդական



տնտեսության շահերին։ Նոր բյուջեն կնպաստի մեր երկրի հզորության հետագա ամրապնդմանը և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացմանը։ Մեր բյուջեն խորապես ժողովրդական բյուջե է, խաղաղության բյուջե։ Ագիտատորների կարևորագույն խնդիրն է՝ իրենց զրույցների ընթացքում ամենուրեք ցույց տալ, որ սոցիալիստական պետության բյուջեի հիմնական մասը հատկացվում է ժողովրդական տնտեսության զարգացմանը, կուլտուրայի հետագա վերելքին, ժողովրդի նյութական մակարդակի էլ ավելի բարձրացմանը, որ Սովետական կառավարությունը հաստատապես ու անշեղորեն վարում է խաղաղասիրական քաղաքականություն։

ՍՍՌՄ Պետական բյուջեի հարցերը մասայականացնելիս, ագիտատորները գործ են ունենալու մեծ քանակությամբ թվերի հետ։ Ագիտատորը զրույցի նյութերը մշակելու ժամանակ թվական տվյալները հմտորեն և ճիշտ պետք է օգտագործի։ ՍՍՌՄ Պետական բյուջեն ցույց է տալիս մեր մեծ Հայրենիքի տնտեսական հզորության հետագա

աճման, աշխատավորների նյութական բարեկեցության հսկայական վերելքի, կուլտուրայի, գիտության ու արվեստի ծաղկման հեռանկարները։ Նրանում մեր երկրի աշխատավորները տեսնում են իրենց մոտավոր ապագան, իրենց վաղվա երջանիկ օրը։

Ագիտատորների խնդիրն է՝ ճիշտ մեկնաբանել Պետական բյուջեի յուրաքանչյուր հոդվածը, որպեսզի ունկնդիրները այն խորը կերպով ըմբռնեն։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքի մեջ կարևոր տեղ է գրավում նաև թերթերի, ժուռնալների և այլ գրականության կոլեկտիվ բարձրաձայն ընթերցանությունը։ Ագիտատորները ՍՍՌՄ Պետական բյուջեի նյութերը մասսայականացնելիս առանձին դեպքերում կենդանի զրույցի հետ միասին նաև բարձրաձայն ընթերցանությամբ կարող են պարզաբանել այս կամ այն հարցերը։ Կանոնավոր և խնամքով պատրաստվող բարձրաձայն ընթերցանությունը հնարավորություն է տալիս աշխատավորներին միշտ տեղյակ պահել քաղաքական իրադարձություններին, նրանց սիստե-



մատիկաբար ծանոթացնել ընթացիկ քաղաքականության հարցերի և միջազգային դրության հետ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիան քննության առավ նաև Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի դիմումը և միահամուռ կերպով իր համերաշխությունն հայտնեց Մշտական կոմիտեի առաջարկների հետ։ Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական Կոմիտեի առաջարկները լիովին համապատասխանում են բոլոր ժողովուրդների կենսական պահանջներին և նրանց ձգտումներին՝ կայուն, երկարատև խաղաղությունն ամբողջ աշխարհում ապահովելու գործում։

Դեպուտատ Վ. Վ. Կուզնեցովի ՍՍՌՄ Գերագույն Սովետում Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի կոչի մասին հաղորդումը միահամուռ կերպով ընդունվեց սովետական ժողովրդի ընտրյալների կողմից։ Այդ առթիվ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հայտարարու-

թյան մեջ ասված է. «...ՍՍՌՄ Գերագույն Սովետը վստահություն է հայտնում, որ խաղաղության կողմնակիցների շարժումը և ամենից առաջ խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի Ստոկհոլմի վերոհիշյալ դիմումը կարժանանա սովետական ամբողջ ժողովրդի միահամուռ աջակցությանը»։

Ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ պարզաբանել աշխատավորական լայն մասսաներին դեմոկրատիայի և խաղաղության պաշտպանների միասնական ճակատի աննախընթաց աճը։ Անհրաժեշտ է պարզաբանել, որ սովետական մարդիկ անդուլ պայքար են մղում ամբողջ աշխարհում խաղաղության համար, բոլոր ժողովուրդների հետ բարեկամություն և համագործակցություն հաստատելու համար, որ սովետական ժողովուրդը կայուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար մարտնչողների ավանգարդն է։

Ագիտկոլեկտիվների ղեկավարները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, ագիտատորների համար պետք



է կազմակերպեն պլանավորված սեմինար պարապմունքներ և այդ պարապմունքների ընթացքում ագիտատորներին պարզաբանեն նրանց առաջիկա զրույցների թեմաները։ Ագիտատորներին հարկավոր է տալ հրահանգչական-մեթոդական ցուցումներ ՍՍՌՄ Ֆինանսների մինիստրի զեկուցման, դեպուտատների ճառերի և Գերագույն Սովետի սեսիայի կողմից ընդունված օրենքների մասսայականացման ուղղությամբ։ Ագիտկոլեկտիվների ղեկավարները սեմինար պարապմունքում անցկացվող նյութերը սերտորեն պետք է կապեն ՍՍՌՄ արտաքին քաղաքականության և միջազգային հարցերի հետ, ինչպես նաև գործարանների, ֆաբրիկաների, կոլխոզների, սովխոզների, ՄՏ կայանների առջև դրված պլանների կատարման և գերակատարման հետ։

Ագիտատորների զրույցներում մեծ տեղ պետք է տրվի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման ասպարեզում ձեռք բերված աչքի ընկնող հաջողություններին, կոնկրետ օրինակներով ուսմա-

տերով ցույց տվեն աշխատավորների նյու-
թական բարեկեցության, բանվորների, ծա-
ռայողների ռեալ աշխատավարձի բարձրաց-
ման, գյուղացիների եկամուտների ավելաց-
ման, Սովետական պետության ազգային ե-
կամտի տարեցտարի աճման գործում եղած
հոյակապ նվաճումները։

Ագիտատորների մարտական խնդիրն է՝
օգնել պարտիական կազմակերպություննե-
րին էլ ավելի բարձրացնելու բանվորների և
կոլխոզնիկների արտադրական ակտիվությու-
նը՝ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսու-
թյան պլանները մինչև Սովետական Հայաս-
տանի պանծալի 30-ամյակի օրը կատարելու
և գերակատարելու համար։

Մ. ՔՈՉԱՐՅԱՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԲՅՈՒՋԵՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին սեսիան
լսեց ու քննարկեց ՍՍՌՄ Ֆինանսների մի-
նիստր ընկ. Ա. Գ. Զվերևի զեկուցումը՝
ՍՍՌՄ 1950 թվականի Պետական բյուջեի և
ՍՍՌՄ 1948 ու 1949 թվականների Պետա-
կան բյուջեի կատարման մասին։ Սեսիան
միաձայն հաստատեց ՍՍՌՄ 1948 ու 1949
թվականների Պետական բյուջեի կատարման
վերաբերյալ հաշվետվությունը և ընդունեց
օրենք սովետական տերության 1950 թվա-
կանի բյուջեի մասին։

Սովետական բյուջեն վառ կերպով արտա-
ցոլում է այն վիթխարի հաղթանակները, որ
ձեռք է բերել մեր երկիրը Լենինի—Ստալինի
պարտիայի ղեկավարությամբ հետպատե-
րազմյան ստալինյան հնգամյակի կենսա-
գործման համար մղվող պայքարում։ 1946
թվականի փետրվարի 9-ին, Մոսկվայի
Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողնե-
րի նախընտրական ժողովում արտասանած
իր պատմական ճառում սովետական ժողո-

մրդի իմաստուն առաջնորդ մեծ Ստալինը
գծեց մեր երկրում կոմունիզմի կառուցման
համար մղվող պայքարի ծրագիրը։ Զինվե-
լով ընկեր Ստալինի ցուցումներով, մեր երկ-
րի բանվորներն ու բանվորուհիները, կոլ-
խոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, սովե-
տական ինտելիգենցիան բացառիկ անձնվի-
րությամբ աշխատեցին և աշխատում են
հետպատերազմյան հնգամյա պլանի կա-
տարման ու գերակատարման համար։ Այդ
են վկայում ընկ. Զվերևի զեկուցման մեջ
բերված պերճախոս տվյալները։

Կոմունիստական պարտիայի և Սովետա-
կան կառավարության ղեկավարությամբ մեր
երկրի աշխատավորները հսկայական աշխա-
տանք կատարեցին ժողովրդական տնտե-
սության վերականգնման համար այն շր-
ջաններում, որոնք պատերազմի տարիներին
ժամանակավորապես օկուպացվել էին գեր-
մանա-ֆաշիստական զավթիչների կողմից։
Այդ շրջաններն արդեն 1949 թվականի սեպ-
տեմբերին հասան արդյունաբերության նա-
խապատերազմյան մակարդակին։ Հետպա-
տերազմյան հնգամյակի չորս տարում վե-
րականգնվել, կառուցվել և գործարկման է
հանձնվել 5200 խոշոր պետական արդյունա-



բերական ձեռնարկություն։ Անցյալ տարի
մեր երկրի ամբողջ արդյունաբերության
համախառն արտադրանքը նախապատե-
րազմյան մակարդակի համեմատությամբ
աճեց 41 տոկոսով։ Խոշոր հաջողություններ
են ձեռք բերվել նաև սոցիալիստական գյու-
ղատնտեսության ասպարեզում։ Անցյալ տա-
րի գերազանցվեց հացահատիկային և մի
շարք տեխնիկական կուլտուրաների համա-
խառն բերքի նախապատերազմյան մակար-
դակը։ Հենվելով պետության ամենօրյա օգ-
նության վրա, գյուղի աշխատավորները
տարեց-տարի նորանոր հաջողություններ
են ձեռք բերում գյուղատնտեսական կուլ-
տուրաների բերքատվության բարձրացման,
ցանքատարածությունների ընդարձակման,
անասնաբուծության զարգացման պլանը
հաջողությամբ կատարելու գործում։

1949 թվականին մեր երկրում կենսագործ-
վեցին արդյունաբերության աշխատանքի
բարելավման խոշոր միջոցառումներ։ Դա
նպաստեց արտադրական կարողությունների
օգտագործման մակարդակի բարձրացմանը,
ձեռնարկությունների ներքին լրացուցիչ
ռեզերվների հայտնաբերմանն ու օգտա-
գործմանը, նյութական արժեքների խնայո-

ղաքար ծախսմանը։ Դրա շնորհիվ կառավարությունը հնարավորություն ստացավ ավելացնելու արդյունաբերության արտադրանքի 1949 թվականի համար սահմանված սկզբնական պլանը։ Արդյունաբերության այդ ավելացված տարեկան պլանը կատարվեց 103 տոկոսով։ Ընկ. Զվերևն իր զեկուցման մեջ նշեց, որ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության արտադրանքը 1949 թվականին՝ 1948 թվականի համեմատությամբ աճեց 20 տոկոսով, իսկ 1950 թվականի առաջին եռամսյակում, 1949 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ՝ 22 տոկոսով։ Արդեն 1949 թվականի վերջին եռամսյակում արդյունաբերության համախառն արտադրանքի ամսական միջին թողարկումը գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը 53 տոկոսով։ Դրա հետ միասին զգալիորեն բարելավվեցին արդյունաբերության աշխատանքի որակական ցուցանիշները։

1949 թվականին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմեց 7,6 միլիարդ փութ, գերազանցելով նախապատերազմյան 1940 թվականի բերքը, և համարյա հասավ այն չափին, որ հնգամյա



պլանով սահմանված էր 1950 թվականի համար։ Այս փաստը փայլուն կերպով ցույց է տալիս, թե ինչպես կարճ ժամանակամիջոցում մեր երկիրը լուծեց հացահատիկային պրոբլեմը։ Հացահատիկային տնտեսության ասպարեզում ձեռք բերված հաջողությունները նպաստավոր պայմաններ ստեղծեցին անասնաբուծության հետագա զարգացման համար։ Պարտիայի և կառավարության կողմից ընդունված կոլխոզային և սովխոզային հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանը հաջողությամբ կենսագործվում է։ Այդ է վկայում այն փաստը, որ կոլխոզներում հանրային մթերատու անասունների գլխաքանակն արդեն անցյալ տարի զգալիորեն ավել էր 1940 թվականին եղած գլխաքանակից։

Ընկեր Ստալինի նախաձեռնությամբ ընդունվեց բնության վերափոխման հոյակապ պլանը։ Այդ պլանը մարտական ծրագիր հանդիսացավ երաշտի դեմ և բարձր կայուն բերք ապահովելու համար մղվող պայքարում։ Սովետական ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ ընդունեց բնության վերափոխման ստալինյան պլանը և այն հա-

ջողությամբ կենսագործում է։ Այդ ծրագրի իրականացումը հնարավորություն կտա ստեղծելու մթերքների առատություն բնակչության համար և հումքի՝ արդյունաբերության համար։

1948 և 1949 թվականների բյուջեն հաջողությամբ կատարվելու մեջ վառ կերպով արտահայտված է ստալինյան հոգատարությունը աշխատավորների նյութական բարեկեցությունն անշեղորեն բարձրացնելու գործի նկատմամբ։ 1949 թվականին ազգային եկամուտը 1948 թվականի համեմատությամբ, համադրելի գներով, աճեց 17 տոկոսով և 36 տոկոսով ավելի էր, քան նախապատերազմյան 1940 թվականին։ Ազգային եկամտի այսպիսի աճը նպաստեց սոցիալիստական արտադրության զգալի ավելացմանը և մեր երկրի աշխատավորների կենսամակարդակի զգալի բարձրացմանը հետպատերազմյան տարիներին։

Արդյունաբերության, գյուղատնտեսության անշեղ վերելքի, աշխատանքի արտադրողականության բարձրացման և թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման ասպարեզում ձեռք բերված հաջողությունների հիման վրա 1950 թվականի մարտի մեկից



անցկացվեց մասսայական սպառման ապրանքների պետական մանրածախ գնի վերջին երկու տարում թվով երրորդ ու ամենամեծ իջեցումը։ Գների այդ իջեցումից բնակչության շահումը կկազմի տարեկան ոչ պակաս, քան 110 միլիարդ ռուբլի։ Մեր երկրում հետևողական կերպով իջեցվում են ապրանքների գները, ավելացվում են աշխատավարձի ֆոնդերը, կենսաթոշակները, նպաստները և մյուս վճարումներն ու արտոնությունները, որոնք տրամադրվում են բնակչությանը՝ պետության հաշվին։ Այս բոլորն ապահովում է բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձի անշեղ բարձրացումը, կոլխոզնիկների եկամուտների աճը։ Անշեղորեն բարելավվում է աշխատավորների նյութական բարեկեցությունը։ Այդ մասին է խոսում հետևյալ փաստը. բանվորների ու ծառայողների եկամուտը ամբողջությամբ վերցրած, համադրելի գներով, յուրաքանչյուր մեկ աշխատողի համար կատարվող հաշվարկումով, 1949 թվականին 1940 թվականի համեմատությամբ աճեց 24 տոկոսով, իսկ գյուղացիների եկամուտները համապատասխանորեն ավելացան ավելի քան 30 տոկոսով։

Երկրի տնտեսական հզորության վերելքին զուգընթաց անշեղորեն բարձրանում է նաև աշխատավորների կուլտուրական մակարդակը։ Սովետական բյուջեի հաջող կատարումը նպաստում է կուլտուր-լուսավորական հիմնարկների, դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտական ինստիտուտների, հիվանդանոցների, առողջարանների, բնակչության կենցաղային սպասարկման հիմնարկների թվի անընդհատ ավելացմանը։ Մեծ աշխատանքներ են կատարվում երկրի քաղաքների ու գյուղերի շինարարության ու բարեկարգման ասպարեզում։ Միայն հետպատերազմյան հնգամյակի վերջին չորս տարում քաղաքներում կառուցվել և վերականգնվել է ավելի քան 72 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Նույն այդ ժամանակամիջոցում գյուղերում կառուցվել է 2,3 միլիոն բնակելի տուն։

Ժողովրդական տնտեսության զարգացման և ազգային եկամտի հետևողական ավելացման ասպարեզում ձեռք բերված այս հսկայական հաջողությունները նպաստավոր պայմաններ ստեղծեցին ՍՍՌՄ Պետական բյուջեի աճման, մեր պետության ֆինանսների ամրապնդման համար։ 1948 թվականի համեմատությամբ 1949 թվականին զգալիորեն աճեցին Սովետական Պետական բյուջեի թե եկամուտները և թե ծախսերը։ Ընդորում բյուջեի բոլոր եկամուտների երկու երրորդը ստացվել է սոցիալիստական ձեռնարկությունների շահույթներից մասնահանումներ կատարելու և շրջանառության հարկ վճարելու կարգով։ 1949 թվականին շահույթներից բյուջեի օգտին կատարված մասնահանումներն ավելացան 1948 թվականի համեմատությամբ 54,9 տոկոսով։ Դա վառ վկայություն է հանդիսանում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հուժկու վերելքի, մեր արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի որակական ցուցանիշների անընդհատ բարելավման։ Բյուջեի բաշխումն ունի հետևյալ պատկերը. ժողովրդական տնտեսության ֆինանսավորմանը հատկացվել է 161,9 միլիարդ ռուբլի, երկրի պաշտպանությանը՝ 79,2 միլիարդ ռուբլի և կառավարման ծախսերի համար՝ 13,5 միլիարդ ռուբլի։

ՍՍՌՄ 1950 թվականի Պետական բյուջեն կազմված է այս տարվա ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսված խնդիրներին

լիովին համապատասխան։ ՍՍՌՄ Գերա-
գույն Սովետի սեսիայի հաստատած Օրենքի
համաձայն բյուջեի 1950 թվականի եկա-
մուտները նախատեսված են 433,1 միլիարդ
ռուբլու գումարով, իսկ ծախսերը՝ 427,9 մի-
լիարդ ռուբլու։ 1950 թվականի Պետական
բյուջեի բոլոր ծախսերի երկուերրորդական
մասը նախատեսնվում է ժողովրդական
տնտեսության և կուլտուրայի զարգացման
համար։ Մեր երկրի պաշտպանության
հետագա ամրապնդման նպատակով բյու-
ջեում անհրաժեշտ ծախսեր են նախա-
տեսվել Սովետական Զինված Ուժերի
պահպանման համար։ 1950 թվականի
պետական բյուջեով Ռազմական մինիստրու-
թյան և Ռազմա-Ծովային մինիստրության
համար կատարվող հատկացումները կազ-
մում են բյուջեի բոլոր ծախսերի 18,5 տո-
կոսը։ 1940 թվականին երկրի պաշտպանու-
թյան ծախսերը կազմում էին բյուջեի ընդ-
հանուր ծախսերի 32,6 տոկոսը, իսկ հետ-
պատերազմյան ստալինյան հնգամյակի ա-
ռաջին տարում՝ 23,9 տոկոսը։ Այստեղից
ակնբախ է դառնում, որ մեր Պետական
բյուջեն վառ կերպով արտացոլում է սովե-
տական ժողովրդի խաղաղ ստեղծարար աշ-



խատանքը, մեր պետության վարած խաղա-
ղության ստալինյան իմաստուն քաղաքակա-
նությունը։

1950 թվականի Պետական բյուջեի հիմ-
նական էությունն այն է, որ նա ուղղված է
արդյունաբերական ու գյուղատնտեսական
արտադրանքի հետագա զգալի աճմանը, ար-
րանսպորտային փոխադրումների ծավալի
ավելացմանը և ժողովրդական տնտեսության
մեջ կատարվող աշխատանքի որակական
ցուցանիշների բարձրացմանը։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների
համար նախատեսված ծախսերի 120,7 մի-
լիարդ ռուբլի ընդհանուր գումարից լուսա-
վորության համար նախատեսված է 59,5
միլիարդ ռուբլի, առողջապահության և ֆիզ-
կուլտուրայի համար՝ 22,0 միլիարդ ռուբլի,
բազմազավակ և միայնակ մայրերին կեն-
սաթոշակներ վճարելու համար՝ 4,0 միլիարդ
ռուբլի և սոցիալական ապահովության հա-
մար՝ 22,4 միլիարդ ռուբլի։ Բյուջեում հա-
տուկ ուշադրություն է նվիրված գիտության
զարգացմանը։

Սովետական բյուջեն վառ կերպով արտա-
ցոլում է լենինյան-ստալինյան ազգային
քաղաքականության մարմնավորումը կյան-

քում։ Միութենական ռեսպուբլիկաների Պետական բյուջեները անցյալ տարվա հետ համեմատած ավելանում են 2,9 միլիարդ ռուբլով, կամ 3,1 տոկոսով։ Դրա ակնառու օրինակն է Հայկական ՍՍՌ բյուջեն, որի ծավալը 1950 թվականին կազմում է 1,115 միլիոն ռուբլի։ Բյուջեի այդ ծավալն ապահովում է մեր ռեսպուբլիկայի տնտեսության ու կուլտուրայի հետագա անշեղ զարգացումը։

Սովետական բյուջեն ամբողջովին արտահայտում է մեր երկրի աշխատավորների շահերը, այն ուղղված է ժողովրդի բարեկեցության հետագա բարելավմանը, խաղաղ ստեղծարար աշխատանք կատարող մեր մարդկանց համար ունևոր, կուլտուրական կյանք ապահովելու նպատակին։

Միանգամայն այլ է պատկերը կապիտալիստական երկրներում։

Ամեն մի կապիտալիստական երկրի պետական բյուջե հետապնդում է այն նպատակը, որպեսզի ավելի շատ շահագործի աշխատավորներին, ստրկացնի ուրիշ ժողովուրդներին, հրահրվի նոր պատերազմ՝ ուրիշի տերիտորիաներ զավթելու համար։ ԱՄՆ-ի պետական բյուջեն մի ծանր բեռ է



Ամերիկայի և մարշալականացված երկրների աշխատավորների համար։ Ռազմական ծախսերը ԱՄՆ-ի բյուջեում աճել են. 1939—1940 թվականին այն կազմում էր բյուջեի 22,5 տոկոսը, 1949—1950 թվականին՝ 68 տոկոսը, իսկ 1950—1951 թվականի բյուջեի մասին կոնգրեսին Տրումենի ուղարկած ուղերձից պարզվում է, որ այն կկազմի բյուջեի մոտ 76 տոկոսը։

Մեր երկրի բյուջեն խորապես ժողովրդական բյուջե է, խաղաղության բյուջե։ ՍՍՌՄ Պետական 1950 թ. բյուջեն նորանոր հաջողություններ կբերի սովետական ժողովրդին կոմունիզմի համար մղվող պայքարում։ Մեր ագիտատորների խնդիրն է՝ լայնորեն պարզաբանել աշխատավորներին Պետական բյուջեի Օրենքը։

Մ. ԱՍԱՏՐՅԱՆ

# ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԵՐ ՓՈՐՁԸ

Հոկտեմբերյանի հենակետային-ցուցադրական մեքենատրակտորային կայանը բազմիցս առաջնություն է նվաճել Համամիութենական Սոցիալիստական մրցության մեջ և արժանացել Փոխանցիկ Կարմիր դրոշների ու դրամական պարգևների։ Անցյալ տարի իր սպասարկած կոլխոզներում ՄՏ կայանի կոլեկտիվը եռանդուն պայքար ծավալեց բամբակի բարձր բերքի համար։ Նա ճշտությամբ կատարեց տիպային պայմանագրերով ստանձնած իր պարտականությունները և հասավ այն բանին, որ իր աշխատանքների տարեկան պլանը ոչ միայն խոշոր չափով գերակատարեց, այլև այն կատարեց աշխատանքի բոլոր տեսակների գծով։ Բամբակի բերքատվության պետական առաջադրանքը ՄՏ կայանի սպասարկած կոլխոզները միասին վերցրած կատարեցին 140 տոկոսով։ Այսպիսով, ՄՏ կայանի մեխանիզատորները կարողացան լուրջ հաջողությունների հասնել բարձր բերքի համար մղվող պայքարում, որի շնորհիվ պետությանը



հանձնվեց մեծ քանակությամբ բամբակի արտապլանային հումք։

Հոկտեմբերյանի շրջանի աշխատավորները գարնանացանի սկզբին դիմեցին ռեսպուբլիկայի բոլոր բամբակացան շրջանների կոլխոզնիկներին, մեխանիզատորներին ու մասնագետներին՝ կոչ անելով նրանց սոցիալիստական մրցություն ծավալել ի պատիվ Սովետական Հայաստանի 30-ամյակի։ Հոկտեմբերյանցիները պարտավորվել են բամբակի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով 30 ցենտներ բերք ստանալ։ Պայքարելով այդ պարտավորությունը կատարելու համար, ՄՏ կայանի կոլեկտիվը կատարեց ու գերակատարեց գարնանային աշխատանքների համար պետության կողմից սահմանված առաջադրանքները։ Բամբակի ցանքը կատարվեց լավագույն ժամկետում։ Հողերի փոցխումը, հարթեցումը և մյուս աշխատանքները նույնպես կատարվեցին ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում։ Մոտ 3000 հեկտարով գերակատարվեց հողերի փոցխման առաջադրանքը։ 1800 հեկտարով գերակատարվեց հարթեցման պլանը. ապրիլի 21-ին ավարտելով ցանքը, ՄՏ կայանի կոլեկտիվն օգնության գնաց

հարևան ՄՏ կայանին՝ կատարելով 300 հեկ-
տար բամբակի ցանք։
Այդ ամենի հետ միասին ՄՏ կայանի կո-
լեկտիվը տնտեսեց 4 տոննա վառելանյութ և
35 հազար ռուբլու արժողությամբ պահեստի
մասեր։
ՄՏ կայանի ձեռք բերած այդ հաջողու-
թյունների մեջ մեծ բաժին ունի մեր պարտ-
կազմակերպության ագիտկոլեկտիվը, որն իր
ամբողջ աշխատանքը խսպաս է դրել բամ-
բակի բարձր բերքի համար մղվող պայքա-
րին։

Ագիտատորներն իրենց աշխատանքն ըս-
կսեցին բրիգադաների միջև, ինչպես նաև
տրակտորիստների միջև սոցիալիստական
մրցություն կազմակերպելով։ Տրակտորային
բոլոր բրիգադաները և տրակտորիստները
դաշտ դուրս գալու հենց առաջին օրը իրենց
հետ ունեին սոցիալիստական մրցության
պայմանագրեր։ Դրանից հետո հարկավոր
էր տրակտորիստների ուշադրությունը կենտ-
րոնացնել առանձնած պարտավորություննե-
րի կատարման վրա։ Ահա տրակտորային
բրիգադաներից մեկի աշխատանքի օրինակը.
Բամբակաշատ գյուղի կոլխոզը մշակում է
340 հեկտար բամբակի պլանտացիա։ Այս-
տեղ տրակտորային բրիգադայի ագիտատոր



Հ. Շառոյանը տրակտորիստներին պատմում
էր գարնանացանի վերաբերյալ բոլշևիկյան
պարտիայի ու սովետական կառավարության
որոշումների մասին, հաղորդում էր նրանց
ՄՏ կայանի մյուս բրիգադաների ձեռք բե-
րած հաջողությունները, լույս էր ընծայում
խլեիշովկան և իր մատչելի զրույցներով տր-
րակտորիստներին ոգեշնչում աշխատանքա-
յին սխրագործությունների։ Տրակտորային
բրիգադան, նրա յուրաքանչյուր անդամը
պատվով դուրս եկան մրցության առաջին
շրջանից։ Բամբակի ցանքը ավարտվեց ագ-
րոտեխնիկական լավագույն ժամկետում, այն
է ապրիլի 21-ին։
Մեր ագիտկոլեկտիվը մեծ կարևորություն
է տալիս դրական փորձի փոխանակությանը։
Այդ բնագավառում նրա կատարած աշխա-
տանքը շատ լավ արդյունք է տալիս։ Ահա ևս
մեկ օրինակ։ Տրակտորային № 12 բրիգա-
դան, որի բրիգադիրն է Ե. Հակոբյանը, իր
պարտավորությունը չէր կատարում և բացի
այդ վառելիքի գերածախս էր տալիս։ Բրիգա-
դայի անդամներին պարզաբանվեց առաջա-
վոր բրիգադաների աշխատանքի փորձը. ա-
գիտատորը տրակտորիստներին պատմեց,
որ առանց աշխատանքային յուրաքանչյուր
րոպեն արդյունավետ ձևով օգտագործելու,

անհնարին է ժամային գրաֆիկը պահպանել, որ վառելանյութի գերածախսը վերացնելու համար հարկավոր է նախ և առաջ թույլ չըտալ կորուստ և սարքին վիճակի մեջ պահել մեքենան: Ագիտատորը բրիգադայի անդամներին պարզաբանեց, որ պարտավորություն ստանձնելը, բայց չկատարելը խիստ անպատվաբեր բան է: Այնուհետև ագիտատորը նրանց հաղորդեց տրակտորային բոլոր բրիգադաների վերջին հնգօրյակի աշխատանքի արդյունքները:

Ագիտատորի խոսքը մեծ ազդեցություն գործեց տրակտորիստների վրա: Հենց այստեղ էլ նրանք խոստացան՝ ամեն ջանք գործ դնել առաջավորներին հավասարվելու և նույնիսկ գերազանցելու համար:

Հաջորդ օրվանից բրիգադայում աշխատանքի պատկերը փոխվեց: Տրակտորիստները պայքարում էին բարձր արտադրողականության համար: Գնալով նրանց աշխատանքի տեմպն է՛լ ավելի բարձրացավ: Հինգ օրից հետո, երբ ամփոփվում էին կատարված աշխատանքի արդյունքները, բրիգադայի ցուցանիշներն այլևս այն չէին, ինչ որ առաջ: Առաջխաղացումն ակներև էր: Գարնանային աշխատանքների վերջերին այդ բրիգադան արդեն քայլում էր առաջավորների շարքերում, նա ոչ միայն վառելիքի գերածախս չուներ, այլև տնտեսել էր 1750 կիլոգրամ վառելանյութ և 7500 ռուբլու արժողությամբ մասեր: Այժմ Ե. Հակոբյանի բրիգադայի մասին ՄՏ կայանի կոլեկտիվում խոսում են հիացմունքով. ավելին-այդ բրիգադայի փորձը ագիտատորները հաղորդում էին ուրիշ բրիգադաների:

Սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու և առաջավորներին խրախուսելու նպատակով ագիտկոլեկտիվը գործադրում է մի շարք միջոցներ: Սիստեմատիկ կերպով գործում է մեր Պատվո տախտակը, որին արժանացնում ենք ամենաառաջավոր մեխանիզատորներին: Բրիգադաների և տրակտորիստների միջև աշխույժ պայքար է ընթանում միջբրիգադային փոխանցիկ Կարմիր Դրոշը նվաճելու համար:

Դաշտային աշխատանքների ժամանակ անհնարին է ագիտատորներին հաճախակի ՄՏ կայան հրավիրել, որովհետև նրանք հենց բրիգադիրներ ու տրակտորիստներ են: Այդ հանգամանքը հաշվի առնելով պարտկազմակերպությունը և ես, իբրև ագիտկոլեկտիվի ղեկավար, նրանց օգնություն ենք կազմակերպում հենց տեղում՝ դաշտում:

Դաշտում, տրակտորիստների մեջ քաղա-

քական-մասսայական աշխատանքը իհարկե չի սահմանափակվում միայն վերևում մեր ասածով։ Տրակտորիստների հետ զրույց ունենալու, պարտիայի ու կառավարության որոշումները նրանց պարզաբանելու կամ միջազգային իրադարձությունների մասին հաղորդումներ տալու համար մենք հանձնարարություններ ենք տալիս նաև ՄՏ կայանի ղեկավար աշխատողներին, ինչպես օրինակ դիրեկտորին, ավագ մեխանիկին, ագրոնոմներին, որոնք ամեն օր լինում են տրակտորային բրիգադներում։

Տրակտորիստների մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքը մեծապես օգնում է ՄՏ կայանի առջև դրված տնտեսական խնդիրների իրագործմանը։ Մեր ագիտկոլեկտիվը այժմ իր աշխատանքը տանում է այն ուղղությամբ, որպեսզի տրակտորային բրիգադները պատվով կատարեն իրենց ստանձնած պարտավորությունները մրցության երկրորդ՝ ցանքի մշակության շրջանում։

Մ. ՄԿՐՏՉՅԱՆ

(Հոկտեմբերյանի հենակետային-ցուցադրական ՄՏ կայանի պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվի ղեկավար)



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄ. Կ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ՝ «1950 ԹՎԱԿԱՆԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԸ ԱՆՑԿԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ»։

1. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի՝ բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումները անցկացնելու մասին որոշումը՝ գյուղատնտեսության աշխատողների մարտական ծրագիրն է բարձր բերքի համար մղվող պայքարում։

2. 1950 թվականի գարնանացանի հաջող անցկացումը կոլխոզային գյուղի քաղաքական և արտադրական հսկայական վերելքի, կոլխոզային կարգի հզորության մի նոր վառ վկայությունն է։

3. Բերքահավաքը սեղմ ժամկետում, անկորուստ անցկացնելը, գյուղատնտեսական մթերքների մթերման պետական պլանի ժամանակին կատարումը և կոլխոզներն ու սովխոզները սերմացուով ապահովելը ժողովրդա-տնտեսական կարևորագույն

*խնդիր է՝ երկրի հզորության հետագա ամրապնդման և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում։*

*4. Սոցիալիստական հողագործության աշխատողների առաջավորների աշխատանքի փորձի լայն մասսայականացումը՝ 1950 թվականի բարձր բերքի ստացման կարևորագույն պայմանն է։*

*5. Բոլոր կոլխոզնիկների, սովխոզների և ՄՏ կայանների աշխատողների ակտիվ մասնակցությունը սոցիալիստական մրցության մեջ, վերցրած պարտավորությունների սիստեմատիկ ստուգումը՝ բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումներն անցկացնելու մասին պարտիայի և կառավարության որոշման հաջող կենսագործման հզոր գենքն է։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և Համկ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ *«1950 թվականի բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումները անցկացնելու մասին»։ «Սովետական Հայաստան», 16 և 17 հունիսի 1950 թ.։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1950 թվի ապրիլի 27-ի Հրամանագիրը՝ *1950—1951 թվականներին բարձր բերք ստանալու համար կոլխոզնիկներին, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պար-*



*գևատրելու մասին։ «Սովետական Հայաստան», 1, 2 և 3 հունիսի 1950 թ.։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1950 թ. հունիսի 14-ի Հրամանագիրը՝ *«Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու մասին»։ «Սովետական Հայաստան», 16 հունիսի 1950 թ.։*

Ա. Ի. Միկոյան.— *Ճառ, արտասանած Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում։ «Սովետական Հայաստան» 11 մարտի 1950 թ.։*

II

## ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՐԱՐՆԵՐ Լ. ԿՈՐԱԲԵԼՆԻԿՈՎԱՅԻ ԵՎ Ֆ. ԿՈՒԶՆԵՑՈՎԻ ՓՈՐՁԸ՝ ՀՈՒՄՔԻ ԵՎ ՕԺԱՆԴԱԿ ՆՅՈՒԹԵՐԻ ԿՈՄՊԼԵՔՍԱՅԻՆ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ։

*1. Պետական միջոցների, հումքի, նյութերի, գործիքների խնայողությունը ժողովրդա-տնտեսական կարևոր խնդիր է։*

*2. Լ. Կորաբելնիկովայի և Ֆ. Կուզնեցովի հիանալի նախաձեռնությունը արժեքավոր ներդրում է արտադրության աշխատողների սոցիալիստական մրցության զարգացման մեջ, հանդիսանում է արտադրանքի թողարկումն ավելացնելու և ինքնարժեքն իջեցնելու վերաբերյալ սովետական հայրենասերների հոգատարության վառ արտահայտությունը։*

3. Հումքի և նյութերի խնայողության, արտադրության մեջ խոտանի և մնացորդների կրճատման, խնայած հումքի և նյութերի հաշվին արտապլանային արտադրանք տալու համար ծավալվող սոցիալիստական մրցության մեջ ակտիվորեն մասնակցելը՝ արդյունաբերության բոլոր աշխատողների պարտքն է։

4. Ինչպես է կազմակերպված Լ. Կորաբելնիկովայի և Ֆ. Կուզնեցովի նախաձեռնության մասսայականացումը և ներդրումը մեր բրիգադներում, ցեխում, ձեռնարկության մեջ։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ինչպե՞ս կազմակերպել մրցակցությունը: Ընտիր երկեր 2 հատորում, հատ. 2-րդ, էջ 260—268, Հայպետհրատ 1948 թ.։

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն: Ընտիր երկեր 2 հատորում, հատ. 2-րդ, էջ 505—524, Հայպետհրատ 1948 թ.։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Մրցությունը և մասսաների աշխատանքային վերելքը: Երկեր, հատ. 12, էջ 122—126։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությանը: «Լենինիզմի հարցեր», 11-րդ հրատ., էջ 602—617, Հայ. հրատ.։

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը: Հայպետհրատ, 1949 թ., բաժին 1-ին։ «Ագիտատորի բլոկնոտ» 1949 թ., № 22։

—— ◆ ——



---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ